ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ
ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ
**ԽՈՐԷՆ ՎԱՐԴԱՊԵՏ ԼԱԶԱՐԵԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄ**

# ԱՇԽԱՐՀԱՑՈՅՑ
# ՎԱՐԴԱՆԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Քննական հրատարակութիւն

**ՀԱՅԿ ՊԷՐՊԷՐԵԱՆԻ**

համեմատութեամբ 24 ձեռագրի եւ տպագրի

*

**ԲԱՐԻԶ**
**Տպարան «Արաքս»**
**1960**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

1·— 1728ին, Երեմիա վարդապետ իր Բառգիրքին (1) երկրորդ տպագրութեան վերջին էջերուն մէջ հրատարակած է Աշխարհացոյց մը, «Արարեալ է աշխարհացոյց նորոգ թարգմանչին եւ երկրորդ Լուսաւորչին Վարդանայ Վարդապետին պարզ եւ համառօտ տեսութեամբ» խորագրով։

1819ին Փրանսացի հայագէտ Ժ. Սեն–Մարթեն, Երեմիայի հրատարակութեան մէջ նկատած ըլլալով բազմաթիւ սխալներ որ զայն դժուարիմաց վիճակի մը վերածած էին, երկրորդ անգամ հրատարակած է Աշխարհացոյցը Բարիզի Արքայական (այժմ պետական) մատենադարանին հայերէն ձեռագիրներէն մէկուն մէջ պահուած «շատ լաւ» օրինակէ մը (2)։ Սեն–Մարթենի այս հրատարակութիւնը կը կրէ «Աշխարհացոյց Վարդանայ վարդապետին» խորագիրը։ Հայերէն բնագրին համդիպակաց էջին վրայ կը գտնուի Փրանսերէն թարգմանութիւնը, որուն կը յաջորդեն թարգմանիչին ծանօթագրութիւնները (էջ 454–471) (3)։ Հայ եւ օտար ուսումնագէտները Վարդանի Աշխարհացոյցին այս հրատարակութիւնն է որ օգտագործած են։

---

(1) *ԲԱՌԳԻՐՔ ՀԱՅՈՑ արարեալ ի սուրբ էջմիածին ԵՐԵՄԻԱ վարդապետէ: Եւ բառք Աստուածաշունչ գրոց ընդ սմա միաւորեալ։ Որ եւ ընթերցողաց զԱստուածաշունչ գիրս բաւական է լինին: Տպեցաւ ի հայրապետութեան Տեառն Կարապետի սրբազան կաթողիկոսի. ՌՃՀԷ: Կ. Պոլիս։ (էջ 497—535):*

(2) *Այս օրինակը կը գտնուի այժմ թիւ 147 ժողովածոյին մէջ 132—143* ( F. Macler, Bibliothèque Nationale. **Catalogue des Manuscrits arméniens eé géorgiens.** Paris, 1908, p. 80 ).

(3) J. Saint-Martin, **Mémoires historiques et géographiques sur l'Arménie, suivies du texte arménien de l'Histoire des Princes Orpélians, par Etienne Orpélian, archevêque de Siounie, et de celui des Géographies attribuées à Moyse de Khorène et au docteur Vartan, avec plusieurs autres pièces relatives à l'histoire d'Arménie ; le tout accompagné d'une traduction Françoise et de notes explicatives.** Paris, 1819. Tome II, p. 406-453.

1887ին Վարդանի Աշխարհացոյցը երրորդ հրատարակութեամբ մը լոյս տեսած է Բազմավէպի մէջ (երկսիւն էջ 134–144) «Վարդանայ Վարդապետի Աշխարհացոյց ամենայն տիեզերաց» խորագրով, Վենետիկի Մխիթարեան միաբանութեան ձեռագրատան Ոսկեփորիկ ԼԹ·ի մէջ պահուած ձեռագրէ մը, որ մասամբ կը տարբերի Բարիզի ձեռագրէն: Հանդէսի մը էջերուն մէջ կորսուած այս հրատարակութիւնը ընդհանրապէս անծանօթ մնացած է, եւ նոյնիսկ Հ. Յ. Տաշեան կարծած է թէ այս բնագիրը «կտոր մը»ն է միայն Աշխարհացոյցէն (Տաշեան, Ցուցակ. . Մխիթարեանց ի Վիեննա, էջ 1060 ա):

2.— Ներկայ բնագիրը, որ կը կազմէ Աշխարհացոյցին չորրորդ հրատարակութիւնը, հիմնուած է Վենետիկի Մխիթարեանց եւ Երուսաղէմի Ս.Յակոբեանց ձեռագրատուններուն, Բարիզի Պետական Մատենադարանին, Լոնտոնի Բրիտանական Թանգարանին եւ Թավրիզի 20 ձեռագիրներուն, Երեմիայի, Բազմավէպի եւ Սէն–Մարթենի հրատարակած բնագիրներուն, ինչպէս նաեւ Սէն–Մարթենի հրատարակած բնագրին վրայ Նորայր Բիւզանդացիի կատարած ձեռագրական սրբագրութիւններով պատրաստած բնագրին, ընդամէնը 24 ձեռագիր եւ տպագիր Աշխարհացոյցներու համեմատութեամբ:

Այս ձեռագիրները եւ տպագիրները համեմատութեանց մէջ նշուած են հետեւեալ ցուցանիշներով.

Ա, Բ, Գ, Դ, Ե, Զ, Է, Ը, Թ, Ժ, Ի, Լ, Խ, Ծ, Կ, Հ, Ձ, Ղ, Ճ, Մ, Պ, Փ, Ս, Ն

որոնց նկարագրութիւնը հետեւեալն է (չակերտուած տեղեկութիւնները Վենետիկի ձեռագիրներուն մասին հաղորդուած են Հ. Քերոբէ Չրաքեանի եւ Երուսաղէմի ձեռագիրներուն մասին Նորայր եպիսկոպոս Պողարեանի կողմէ): ՁՁ կը նշանակէ «բոլոր ձեռագիրները»:

3.— Ա. ՁԵՌԱԳԻՐՆԵՐ

Ա. Վենետիկի Թ. 968: Միասիւն, բոլորգիր: Ձեռագիրը «տոմարի մը մէջ, պէսպիսագիր, գրուած մասամբ Սարգիս Քուրեցիէ, Իլով քաղաքը, եւ մասամբ Սրապիոն Բարերդցիէ եւ Ստեփանոս Թոխաթցիէ ի թուին ՌԿՁ» (1617): էջ 193–210:

Աշխարհացոյցը կը յաջորդէ Կարապետ վարդապետի աշխարհագրական ոտանաւորին: (Այս ոտանաւորը տես Հ. Ն. Ակինեան, Մատենագրական Հետազօտութիւններ, Գ, 318–342): Ընդհանրապէս դիւրընթեռնելի: Բառերը յաճախ սղուած չեն եւ ուղղագրական սխալները քիչ են: Գրիչը յայտնօրէն ապրած է Օսմանեան կայսրութեան սահմաններուն մէջ, եւ քաղաքներէն ոմանց Թուրքերէն անունները աւելցուցած է:

Բ. Երուսաղէմի Թ. 1138: Երկսիւն, նոտրագիր: Ձեռագիրը, որուն մաս կը կազմէ Աշխարհացոյցը, ժողովածոյ մըն է գրուած ՌՃԺԷ (1668) թիւին: Գրիչ եւ տեղի անյայտ»:

Բազմաթիւ սղումներ, բայց քերականական եւ ուղղագրական սխալները՝ յարաբերաբար քիչ: Գրիչը յաճախ որ գրած է փոխանակ ուրի:

Գ. Վենետիկի Թ. 350: Երկսիւն, նոտրագիր: «Կիրակոս պատմիչի երրորդ օրինակին հետ: Գրիչ, թուական եւ տեղի անյայտ»:

Ընդօրինակուած՝ բոլորովին տգէտ գրիչի մը կողմէ, լի անհաւատալի սխալներով: Կը պակսին Գլուխ Դբ, տող 48–74:

Դ. Վենետիկի Թ. 780: Երկսիւն, նոտրագիր: «Կիրակոս եւ Վարդան պատմիչներուն կարգին: Թերի վերջաւորութիւնը: Չկայ հեղինակի եւ գրչի անուն եւ ոչ ալ թուական»:

Ձեռագիրը թերի չէ, եւ ունի յաւելուածական մաս մը (տես Գլուխ Դբ, 147–155 տողերուն վերաբերեալ ծանօթագրութիւնը):

Ընթեռնլի, բայց բազմաթիւ սղումներով եւ յաճախ ուղղագրական սխալներով: Ինչպէս Գին մէջ, կը պակսին Դբ, տող 48–74:

Ե. Երուսաղէմի Թ. 642: «Միասիւն: Ոսկեփորիկ: Օրինակս է բոլորգիր եւ ստուարաթուղթ լի անտանելի վրիպակօք. գրեալ է ի Վանատիկ քաղաք, ի դուռն եւ ի տաճարն սրբն. Մարկոսի Աւետարանչի, աջողութեամբ սբ. Աստուածածնին եւ սբ. Ստեփաննոսի նախավկային եւ աղօթիւք սբ. Լուսաւորչին եւ ամ. սրբոցն ի թվ. ՌՀԲ (1623) ձեռամբ Ամիրջայ սարկաւագի Հալէպցւոյ»: Տ. Սաւալանեան Ցուցակ, էջ 376): Հակառակ «անտանելի վրիպակներ»ուն այս ձեռագիրը ունի ընտիր ընթերցուածներ: Դժբախտաբար ձեռագրին 11 էջերէն 5ին ձախակողմեան եւ բոլոր էջերուն վերի մասերը մասամբ կտրուած են, սակայն այս թերիները կը լրացուին Զ ձեռագրին ընթերցուածներով, Ե եւ Զ ընդօրինակուած ըլլալով նոյն նախատիպէն կամ իրարու շատ նման երկու նախատիպէ:

Ունի այն յաւելուածական մասը զոր ունին Գ եւ Դ ձեռագիրները:

Զ. Վենետիկի հին Թ. 260 « Ոսկեփորիկ ԻԱ, 79ա–87 բ: Միասիւն, նոտրագիր: Թուական, տեղի եւ գրիչ անյայտ: (Տես Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ, Բ. էջ 809–819): Հաւանականաբար ընդօրինակուած ԺԶ–ԺԷ դարուն:

Աշխարհացոյցէն անմիջապէս առաջ ճերմակ էջին վրայ կայ հետեւեալ յիշատակագրութիւնը. Ես մեղաւոր եւ անարժան տէր Գալուստս որ եմ աստապատցի այս գիրքս իմ է:

Ընդհանրապէս դիւրընթեռնլի, քիչ սղում եւ ուղղագրական սըխալ։ Կը պակսին Գլուխ Գ, տող 352–328 եւ Դր, 1–41 տողերը, որոնք կը լրացուին Է ձեռագրին համապատասխան տողերով, Զ եւ Է ընդօրինակուած ըլլալով նոյն նախատիպէն։

Է. Վենետիկի Թ. 1326։ Միասին, գեղեցիկ նոտրագիր։ «Միքայէլ պատրիարքի չարքին մէջ» էջ 375–415։ Աշխարհացոյցին վերջը կայ հետեւեալ յիշատակարանը. Թիւ արամեան հազար յանգի՛, հարիւր քսան նմին դասի՛։ Յամսեանն յունաց նոյեմբերի՛, ծրեցաւ տետրակս քառեակ հնգի՛։ Ձեռամբ Մեսրոպ անպիտանի՛. սակս խնդրոյ հարազատի՛։ Որչեալ անուամբ տն. յովսէփի՛. հարազատի հոգւոյս ծնօղի՛։ (1671)։ Տեղի՝ անյայտ։

Ը. Երուսաղէմի Թ 1506։ Միասին, նոտրագիր։ «Ժողովածոյ, էջ 389–449»։ Նոտրագրեալ է ի վերայ հնագոյն թղթոյ ձեռամբ Կարապետ բժշկի, առանց թուականի» (Տ. Սաւալանեան Ցուցակ, էջ 388)։ Դիւրընթեռնլի, բայց բազմավրէպ։ Ընդօրինակուած է լաւ նախատիպէ մը եւ բաղդատուած է ուրիշ ձեռագրի մը հետ եւ վերիները նշանակուած են լուսանցքներուն մէջ։

Թ. Երուսաղէմի Թ. 1514։ Միասին, նոտրագիր։ Ժողովածոյ, էջ 439–524։ Անթուական, տեղի եւ գրիչ անյայտ։ Ընթեռնլի, բայց համբակ գրիչի ընդօրինակութիւն։

Ժ. Վենետիկի Թիւ 262։ Ոսկեփորիկ ԻԳ։ Միասին, նոտրագիր։ Ոսկեփորիկը ընդօրինակուած է երկու անգամէն ՌՃԽԵ (1696) եւ ՌՃԿԵ (1716) թիւերուն Վանի մէջ Փութկանց կամ Բութկանց տէր Թումայի կողմէ։ (Տես Հ. Բ. Սարգիսեան Ցուցակ... ի Վենետիկ, Բ, էջ 828–829, Թիւ 262/12)։ Աշխարհացոյցը կը գրաւէ Ոսկեփորիկին 76ա 83բ էջերը։ Կանոնաւոր եւ ընտիր ուղղագրութիւն, բայց գրեթէ բոլոր բառերը սղուած եւ իրարու կցուած են։ Դժուարընթեռնլի։

Ի. Վենետիկի Թ. 124։ Խմբագիրք Է։ էջ 1–34։ Միասին, գեղեցիկ նոտրագիր։ Ունի հետեւեալ յիշատակարանը. Գրեալ էր օրինակն յորմէ հանաք զայս. ի թուականին հայոց ՌՃԻԲ (1673( յունվարի 24 ի քաղաքն ըստամպօլ ի Սուլումանաստիրն. բայց մեք օրինակեցաք ի թուականին ՌՄԼԴ (1785). ի վերջին աւուրսն Ապրիլի. ի նոյնում քաղաքի. ի թաղն Պալատու. եւն., Եւ յօրինակի աստ. գոյր ինչ ինչ աւելորդ եւ ինչ ինչ պակասորդ. որով տպագրեալ օրի–

նակին ոչ համեմատէր. սակայն մեծ զիարդ եւ էր գրչագիրն՝ այնպէս գրեցաւ:

*Գրիչն է տիրացու Գէորգ Տէր Յովհաննէսեան, ԺԸ–ԺԹ դարու պոլսեցի նշանաւոր ուսումնականը, հեղինակ պարսկերէնէ հայերէն բառարանին եւ ուրիշ գործերու: Հետեւաբար քերականական եւ ուղղագրական սխալներ գրեթէ չկան:*

*Լ. Վենետիկի թ. 243: Ոսկեփորիկ Դ, թղ. 41ա–68ա: Միասին, մաքուր նոտրագիր: Գրիչ Կարապետ վարդապետ: Տեղի եւ թուական անյայտ: Հաւանականաբար ԺԶ. դարու առաջին կէսին: (Տես Հ. Բ. Սարգիսեան,* Ցուցակ. *Բ, էջ* 633 (11):

*Ներկայ բնագրին Ա եւ Բ գլուխներուն միջեւ ունի Բժ մարգարէներուն անուանացանկը:*

*Խ. Վենետիկի թ. 240: Ոսկեփորիկ Ա: Միասին, նոտրագիր: Գրիչ, ժամանակ եւ տեղի անյայտ: Հաւանականաբար ԺԵ–ԺԶ դար: (Տես Գ. Բ. Սարգիսեան,* Ցուցակ *Բ, էջ* 538):

*Թերի: Ունի միայն Ա, տող 1–40, Գբ, տող 56–83 եւ 210–225:*

*Ծ. Երուսաղէմի թ. 1477: Ժողովածոյ: Միասին, մաքուր նոտրագիր: Գրիչ Իսահակ աբեղայ (Տ. Սաւալանեան Ցուցակ, էջ 868): Տեղի եւ թուական՝ անյայտ: Ուղղագրութեան եւ ընթերցուածներու բազմաթիւ սխալներ:*

*Կ. Վենետիկի թ. 1260: Շնորհալիի թուղթերուն ժողովածուին վերջը: Գրիչ, տեղի եւ թուական անյայտ»: Ընդհանուր առմամբ ընտիր գրչութիւն եւ ուղղագրութիւն:*

*Հ. Վենետիկի թ. 1371: «Տաղարան ԺԵ.ի հետ: Գրիչ Միքայէլ սարկաւագ. ի թուին ՌՂ (1641)»: Միասին, բոլորգիր: Ընդհանրապէս ընտիր ուղղագրութեամբ եւ ընթերցուածներով:*

*Ձ. Երուսաղէմի թ. 1529: «Ժողովածոյ. գրեալ է նոտրագիծ օրինակս ի գիւղս Թամզառա, ի դուռն սբ. Թագաւորին, ձեռամբ Գրիգորի ի թվ. ՌՂԷ (1648): (Տ. Սաւալանեան* Ցուցակ, *էջ* 897): *Միասին, նոտրագիր: Բազմաթիւ սխալ ընթերցուածներով, սակայն հնագոյն նախատիպէ մը ընդօրինակուած:*

*Ճ.* Պրիթիշ Միւզէումի Օր. 5459, *որ գլխաւորաբար կը պարունակէ Վարդանի Աշխարհացոյցը* (փօլ 8 – փօլ 31), *Անանիա Շիրակացիի Աշխարհագրութեան մէկ մասը, եւն: Ընդօրինակուած է 1614ին Աստուածատուր երէցի կողմէ: Տեղի՝ անյայտ: Միասին գեղեցիկ նոտրագիր:*

(F. O. Conybeare, A. Catalogue of the Armenian Manuscripts in the British Museum. London , 1913, p. 293 b.)

Ըստ ցուցակին հեղինակին, ոմանք այս Աշխարհացոյցը վերագրած են Վարդան վարդապետին (ԺԳ դար), բայց անոր կորիզը աւելի հին է։

Մ. Թաւրիզի Ղալայի կամ Բերդաթաղի Թ. 11. (Գիրք Պարապմանց Ս. Կիւրղի) էջ 249ա–259բ, «Վարդան վարդապետի արարեալ յաղագս ծովուց եւ աշխարաց» խորագրով։ Էջ 258ա–259բ. «Յաղագս ժողովելոյ հայրապետացն թէ ո՛ւր եղեն կամ յե՞րբ եղեն»։ Երկսիւն, բոլորգիր։ Ձեռագիրը ընդօրինակուած է ՌՃԽ (1691) թւին, Նոր Ջուղա, Ազարիա դպիրին կողմէ (Հ. Աճառեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի, Վիեննա 1910, էջ 9–10) Ինչպէս ձեռագրին նկարագրութենէն կը տեսնուի, տիեզերական ժողովներու վերաբերեալ տեղեկութիւնները, որոնք ներմուծուած են միւս բոլոր ձեռագիրներուն մէջ, Մ–ի մէջ կը կազմեն Աշխարհացոյցէն անջատ մաս մը։ (1)

Փ. Բարիզի Պետական Մատենադարանին Թ. 147 հայերէն։ (Աստուածաբանական հաւաքածոյ) Փոլ. 132–144։ Երկսիւն, բոլորգիր։ «Արարեալ է աշխարհացոյցս նորոգ թարգմանչին. եւ երկրորդ լուսաւորչին Վարդանա վդի պարզ եւ համառօտ տեսութը։» ԺԷ դար։ (F. Macler, Catalogue des Manuscrits arméniens et géorgiens de la Bibliothèque Nationale. Paris, 1908, p. 80).

## ՏՊԱԳԻՐՆԵՐ

Ղ. Վենետիկի թիւ 477։ Ոսկեփորիկ Լթ. թղթ. 140ա–151ա։ Տպագրուած Բազմավէպի մէջ (1887), երկսիւն էջ 134–144 (տես Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ, Բ, էջ 948–949)։ Գրիչ, տեղի եւ թուական՝ անյայտ։ Գրիչը կամ հրատարակիչը յայտնօրէն աւելցուցած է սուրբ, տէր մեր, Յիսուս, Քրիստոս եւ անոնց նման բառեր, որոնք չկան միւս ձեռագիրներուն համապատասխան տեղերը։

Պ. Տպագրուած Երեմիա վարդապետին Բառգիրք Հայոցին երկրորդ հրատարակութեան մէջ, 1728 (տես ծան. 1)։ Առաջին հրատարակութեան վերջը կը գտնուի Աշխարհացոյց մը, որ քաղաքներու ա–

---

(1) Այս ձեռագրին գոյութեան ծանօթացանք երբ Աշխարհացոյցին ներկայ հրատարակութեան ձեռագիրը տպագրութեան յանձնուած էր։ Ատրպատականի առաջնորդարանին (Թաւրիզ) քարտուղար Պ. Ռափայէլ Բաքախանեան, 1956 հոկտեմբերին ազնուութիւնը ունեցած էր ինքնաբերաբար ընդօրինակելու այս ձեռագիրը, որ կը վերջանայ Գբ գլուխին 313րդ տողով։

նուններու համառօտ բառգիրք մըն է գրաբարէ աշխարհաբար (Ա. Ղազիկեան, Հայկական նոր մատենագրութիւն..., Ա. Վենետիկ, 1909-1912, էջ 591ա: Տե՛ս եւ Տաշեան Ցուցակ, էջ 201 եւ 822):

Բառգիրքին երկրորդ հրատարակութեան յիշատակարանին մէջ յիշուած է թէ Վարդանի Աշխարհացոյցին ձեռագիրը հայթայթած է Յակոբ վարդապետ. «... այլ եւ յիշեցէք զսիրելի Յակոբ վարդապետն որ ետ զաշխարհացոյցն զոր եդաք ի սմա»:

Ս. Սեն-Մարթենի հրատարակութիւն Փ. ձեռագրին (Տես վերը, ծան. 3):

Ն. Սեն-Մարթենի հրատարակութեան վրայ ձեռագրական ուղղումներով պատրաստուած բնագիր Նորայր Բիւզանդացիի կողմէ, որ նշած է Սեն-Մարթենի ֆրանսերէն թարգմանութեան մէջ ինչ ինչ սխալներ, Աշխարհացոյցին եւ հայ հեղինակներէն ոմանց հաղորդած տեղեկութիւններուն նոյնութիւնը կամ նմանութիւնը, եւ յիշած է Սեն-Մարթենի ծանօթագրութիւններէն մէկ քանին, որոնք կը վերաբերին Աշխարհացոյցին մեկնութեան: Նորայր տեսած է Վենետիկի ԺԵ տաղարանը (մեր Հ ձեռագիրը), եւ տարբերակները նշած է լուսանցքին մէջ առանց զանոնք ներմուծելու բնագրին մէջ երբ նոյն իսկ աւելի ճիշտ ընթերցուածներ կը ներկայացնեն քան Սեն-Մարթենի բնագիրը: Այս աշխատութեան ձեռնարկած է Նորայր 22 դեկտեմբեր 1892ին եւ զայն աւարտած է 7 յունուար 1893ին: 11 սեպտեմբեր 1905ին ուղղած է Դր, տող 6, այնպէս ինչպէս որ տպուած է ներկայ հրատարակութեան մէջ, մինչ նախապէս կարդացած էր «Սուբայք՝ Ջուբահրայ է»:

Իր պատրաստած բնագիրէն առաջ Նորայր դրած է հետեւեալ ծանօթագրութիւնը.

Հատուածքն յերեսս 1-4, 14-17, 28-29 հրատարակեալք են եւ ի Լումայ հանդիսի, 1896, Գիրք Բ., երեսք 334-336: Հատուածն 14-16, «Եւ ի դաշտն Այրարատեան... Յիգտիրուղտի գլնուորացն», կրկին հրատարակեալ է ի Լումայ, 1900, Գիրք Ա, 269-279»:

Ասոնք կը համապատասխանեն ներկայ հրատարակութեան հետեւեալ հատուածներուն. Ա. տող 1-53, Գբ, տող 48-90, 210-240:

Նորայրի բոլոր ծանօթագրութիւնները, բացի ԺԵ տաղարանին տարբերակներէն, որոնք նշուած են արդէն տողատակ ուղղագրական համեմատութիւններուն մէջ, արտագրուած են «Ծան. Ն.—»ի ձեւով:

Նորայրի կատարած ձեռագրական սրբագրութիւններուն մեծագոյն մասը ճիշտ է, սակայն գրեթէ ամէնքն ալ ուղիղ ձեւերով կը

գտնուին այս կամ այն ձեռագրին կամ ձեռագիրներէն ոմանց մէջ։ Մնացեալներէն ոմանք խնդրական են կամ անընդունելի։ Նորայրի պատրաստած ձեռագիրը քննական հրատարակութիւն մը չէ, այլ լոկ Մեն–Մարթենի տպագրին ընդօրինակութիւնը ձեռագրական ուղղագրութիւններով։

4.— Վերոյիշեալ ձեռագիրներէն եւ տպագիրներէն զատ, Աշխարհացոյցին մէկ ձեռագիրը կը գտնուէր Թաւրիզի առաջնորդարանին ձեռագիր Վարք Հարանցին մէջ, գրուած 1653ին Երնջակ գաւառին Շոռոթ գիւղը, անանուն գրիչի մը կողմէ։ (Հես Հրաչեայ Աճառեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Թաւրիզի, Վիեննա, 1910, էջ 44–46)։ Ատրպատականի առաջնորդական տեղապահ Կարապետ ա. ք., որմէ խնդրուեցաւ այս ձեռագրին լուսանկարը, 25 յունուար 1956ին պատասխանեց թէ Վարք Հարանցը գոյութիւն չունի իրենց գրացուցակին մէջ, եւ թէ հաւանականաբար կը պատկանէր Հ. Աճառեանի կամ Ներսէս արք. Մելիք–Թանգեանի։

Աշխարհացոյցին ձեռագիրը կը կրէր «Աշխարհացոյց կարգաւ» խորագիրը եւ կը սկսէր «Նախ քան զամենայն խնդրեսցուք եղեալքս» բառերով։

Երկրորդ ձեռագիր մը կը գտնուի Վիեննայի Մխիթարեանց թ. 784 ժողովածոյին մէջ, որ մատենադարան մտած է Տաշեան Ցուցակին հրատարակութենէն ետք եւ ընդօրինակուած է Երուսաղէմի մէկ ձեռագրէն, որ Բաղէշ գրուած է։ Աշխարհացոյցը ունի հետեւեալ յիշատակարանը. Աշխարհացոյցս գրեցաւ ձեռամբ մեղապարտ Յակոբին ի թուին Հայոց ՌՁԲ (1633)։ Անմեղագիր լերուք, զի յոյժ սխալ էր օրինակն եւ ես տգէտ գոլով ոչ կարացի զստոյգն ընտրել եւ զճշմարիտն գծագրել»։ Երուսաղէմէն ստացուած ձեռագիրներէն ոչ մէկը կը կրէ 1633 թուականը, եւ այս մասին լուսաբանութիւն մը կարելի չեղաւ ստանալ։

Վիեննայի ձեռագիրներէն հին թ. 77 (Տաշեան Ցուցակ, 201 բ) Աշխարհացոյց մըն է, որ նոյնն է Երեմիայի բառգիրքին մէջ տպագրուած Աշխարհացոյցին հետ, եւ, հետեւաբար, նկատի չէ առնուած։

Հաւանական է որ Աշխարհացոյցին ուրիշ ձեռագիրներն ալ գտնուին արտասահման։ Այսպէս, ներկայ աշխատութիւնը աւարտած էր երբ անուղղակի կերպով իմացանք թէ ձեռագիր մը կը գտնուի Զմմառի Անտոնեանց հաւաքածոյին մէջ, բայց կարելի չեղաւ ո՛չ անոր ընդօրինակութիւնը եւ ոչ իսկ անոր մասին որոշ տեղեկութիւն մը առնել։

*Մեզի ծանօթ էին նաեւ այն քանի մը հատուածները որոնք կը պատկանէին Խաչիկ վարդապետ Դատեանի եւ գրուած էին ՌՃԽ* (1691) *թւին Մինաս վարդապետի կողմէ (Յակոբ Յ. Թօփճեան,* Ցուցակ ձեռագրաց Խաչիկ վարդապետի Դատեան, ժողոված 1878-1898: *Վաղարշապատ,* 1898, *էջ 77ա–78ա): Ձեռագիրը որ կը պատկանի ընդարձակուած խումբին եւ որուն վերջաւորութիւնը թերի է, լրիւ չէ հրատարակուած, եւ հրատարակուած մասերն ալ լի են տպագրական ակնրախ սխալներով: Նկատելով որ ձեռագիրը թերի է եւ թէ ներկայ հրատարակութիւնը հիմնուած է գրեթէ ամբողջովին արտասահմանի ձեռագիրներուն վրայ, չնշեցինք Դատեան ձեռագրին տարբերակները, որոնք արդէն նորութիւն մը չէին ներկայացներ, բաց ի մէկէն, զոր որդեգրեցինք (Գր, տող 85), նշանակելով աղբիւրը:*

## ԿԱՐՃ ԵՒ ԸՆԴԱՐՁԱԿՈՒԱԾ ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

5.— *Ձեռագիրներուն համեմատութիւնը երեւան հանեց, ինչպէս արդէն տեսած էր Հ. Ղուկաս Ինճիճեան* (Ստորագրութիւն հին Հայաստանեայց, *բազմաթիւ տեղեր եւ* Հնախօսութիւն... Գ, 314-315, *թէ* Աշխարհացոյցը *մեզի հասած է կարճ եւ ընդարձակուած խմբագրութիւններով: Ինճիճեան կը կարծէր թէ ընդարձակուած խմբագրութեան հեղինակը մէկ անձ է:*

*Կարճ խմբագրութեան ներկայացուցիչներն են* Ա, Գ, Դ, Ե, Ջ *ձեռագիրները, իսկ մնացեալ բոլոր ձեռագիրները, բաց ի Բ–էն, կը պատկանին ընդարձակուած խումբին: Բ–ը խառնուրդ մըն է երկու խումբերուն, եւ մինչեւ Հայաստանի վերաբերեալ մասին վերջը կը հետեւի կարճ, իսկ օտար երկիրներու մասին մէջ՝ ընդարձակուած խումբին: Նոյն իսկ երկու անգամ տարբեր տեղեր կրկնած է նոյն տեղեկութիւնները: Բ–ը թերեւս ներկայացուցիչն է երրորդ խումբի մը, որուն, այդ պարագային, միակ վկան կ՚ըլլայ մեր օգտագործած ձեռագիրներուն մէջ:*

Կարճ խումբին ձեռագիրները (Ա, Գ, Դ, Ե, Զ եւ, Հայաստանի մասին մէջ՝ Բ) համառօտուած չեն սկզբնաբար աւելի ընդարձակ գործէ մը։ Հակառակ պարագային, Երկինք վերնագրուած գլուխն է որ աւելի արժանի նկատուած պիտի ըլլար կրճատուելու, ինչպէս է Զ եւ Է ձեռագիրներուն մէջ, թերեւս հետեւողութեամբ կրճատուած նախատիպի մը։ Կարճ խումբը Աշխարհացոյցին սկզբնագրին ամէնէն մօտ վկան է։

Այս վեց ձեռագիրներէն երկուքը՝ Ե եւ Զ աւելի զերծ են ընդմիջարկութիւններէ քան միւսները, սակայն, կը թուին կրած ըլլալ բառերու փոփոխութիւններ։ Այսպէս, Գլուխ Ա., տող 48, ԱԲԳԴ ունին «Պարսիկք», մինչ ԵԶ, ինչպէս ընդարձակուած խումբին բոլոր ձեռագիրները, այս բառին փոխարէն ունին «այլազգիք»։ Արդ, աւելի ճշմարտանման է ենթադրել թէ մասնաւորը ընդհանուրի վերածուած է քան հակառակը։ Միւս կողմէ ԵԶ-ին մէջ կը պակսին աշխարհագրական տեղեկութիւններ, ինչպէս գլուխ Գ., տող 20 եւ 32, որոնք թերեւս անուշադրութեամբ դուրս մնացած են ասոնց նախատիպէն (Ե եւ Զ իրարմէ ընդօրինակուած չեն)։ Ամէն պարագայի մէջ, կարճ խումբին ձեռագիրները Աշխարհացոյցին սկզբնագրին բացարձակապէս հարազատ ընդօրինակութիւնները չեն։ Ամէնքն ալ կրած են յաւելումներ եւ ունին թերիներ։

Սկզբնագիրը, անորոշ թուականի մը, թերեւս նոյն իսկ ԺԳ դարուն վերջերը, ենթարկուած է նոր խմբագրութեան մը Գ. գլուխին 46րդ տողէն (Հայաստանի աշխարհագրութիւն) սկսեալ, հատուածներու տեղափոխութեամբ եւ նոր ծանօթութիւններու ընդարձակ յաւելումներով։ Յետոյ, ժամանակի ընթացքին, զանազաններ, ձեռագիրներուն լուսանցքներուն մէջ, իրենց բնակավայրին վանքերուն, ուխտատեղիներուն եւ մասունքներուն վերաբերեալ տեղեկութիւններ աւելցուցած են, որոնք յաջորդ գրիչներուն կողմէ ներմուծուած են բնագրին մէջ, այնպէս որ ընդարձակուած խումբին ձեռագիրներուն միջեւ ալ գոյութիւն չունի բնագրի բացարձակ նոյնութիւն։ Նկատի առնելով Աշխարհացոյցին մեզի հասած ձեռագիրներուն թիւը եւ սկզբնագրին մէջ կատարուած փոփոխութիւնները, կարելի է եզրակացնել թէ այս գործը ծառայած է ոչ միայն ուսումնասէրներու հետաքրքրութիւնը գոհացնելու, այլ եւ մանաւանդ իբրեւ առաջնորդ աշխարհագրութեան ուսուցիչներու, եւ հետզհետէ «կատարելագործուած» է։

## ՆԵՐԿԱՅ ԲՆԱԳԻՐԸ

6.— Ինչպէս Կորիւնի Վարք Մաշթոցը եւ Սոկրատի Եկեղեցական Պատմութիւնը, Վարդանի Աշխարհացոյցն ալ մեզի հասած է համառօտ եւ ընդարձակ երկու խմբագրութիւններով, միայն թէ մինչ առաջին երկուքը համառօտուած են ընդարձակ խմբագրութիւններէ, վերջինը ընդարձակուած է կարճ խմբագրութենէ մը:

Գործնականապէս աննպաստ պիտի ըլլար Աշխարհացոյցին երկու խմբագրութիւնները հրատարակել անջատաբար, որովհետեւ ոչ միայն անոնց սկիզբի մասը մինչեւ որոշ տեղ մը հասարակաց է երկու խմբագրութիւններուն, այլ եւ կարճ խմբագրութիւնը, գրեթէ ամբողջովին կը գտնուի ընդարձակ խմբագրութեան մէջ ալ: Անջատ հրատարակութիւն մը մասամբ կրկնութիւն պիտի ըլլար, եւ մանաւանդ պիտի դժուարացնէր աշխարհագրական եւ յարակից ծանօթութեանց զանազան վայրերու եւ ժամանակներու մէջ կրած յաւելումները տեսնել: Յետոյ, ինչպէս ըսուեցաւ, կարելի չէ, հիմնուելով մեր օգտագործած ձեռագիրներուն վրայ, ըսել թէ կարճ խմբագրութիւնը բացարձակ հարազատութեամբ կը ներկայացնէ սկզբնագիրը: Բնաւ անհաւանական չէ որ ընդարձակուած խմբագրութեան մէջ ինչ ինչ նախադասութիւններ կամ նախադասութեան մասեր չպատկանին սկզբնագրին եւ անուշադրութեամբ դուրս մնացած չըլլան կարճ խմբագրութեան նախատիպէն: Հետեւաբար, Աշխարհացոյցին նոր բնագրին հրատարակութեան մէջ որդեգրեցինք կարճ եւ ընդարձակուած խմբագրութիւնները համադրաբար ներկայացնելու մեթոդը: Դժբախտաբար այս համադրումը կարելի չեղաւ Աշխարհացոյցին բոլոր մասերուն մէջ, որովհետեւ ընդարձակ խմբագրութեան մէջ ոչ միայն յաւելումներ կան, այլ եւ հատուածներու եւ նախադասութիւններու տեղափոխութիւններ: Օրինակի համար, Գ գլուխին այն մասը, որ կը սկսի տարբերիլ, կարճ խումբին մէջ կը գրաւէ 195, իսկ ընդարձակուած խումբին մէջ 328 տող, առանց յիշելու տեղափոխութիւնները:

Ընդգրկուած մեթոդը արգելք մը չէ սակայն զանազանելու երկու խմբագրութիւնները:

*Կարճ խմբագրութիւնը կը բաղկանայ Ա, Բ, Գ, Գա, Դ գլուխնե- րէն եւ Դա գլուխին սովորական տառերով տպուած տողերէն, ինչ- պէս նաեւ այն բառերէն եւ նախադասութիւններէն, որոնք արամ- եան տառերով տպուած են բայց որոնց փակագիծի մէջ կը յաջորդեն կարճ խումբին ձեռագիրներուն ցուցանիշները (ԱԳԴԵԶ)։*

*Իսկ ընդարձակ խմբագրութիւնը կը կազմուի Ա, Բ, Գ, Գբ, Դա եւ Դբ գլուխներէն ամբողջովին։*

*Ձեռագիրներուն միջեւ բնագրական տարբերակները տպագր- ուած են արամեան տառերով, եւ ասոնց կը յաջորդեն փակագիծի մէջ ցուցանիշները այն ձեռագիրներուն որոնց մէջ կը գտնուին այդ բառերը կամ նախադասութիւնները։ Երբ արամեան տառերով տպ- ուած հատուածի մը վերջը ցուցանիշներ չեն դրուած, կը նշանակէ թէ այդ հատուածը կը գտնուի յաջորդ նախադասութեան կամ հատ- ուածէն վերջ նշանակուած ձեռագիրներուն մէջ։*

*Արամեան տառերով տպուած մասերուն մեծագոյն մասը յա- ւելումներ են, սակայն կան նաեւ բառեր կամ նախադասութեան մա- սեր որոնք յայտնապէս գրիչներուն անուշադրութեան հետեւանքով է որ չեն ընդօրինակուած։ Ընթերցողները դիւրաւ կրնան զանազանել այս վերջինները՝ նախադասութեան իմաստին համաձայն։*

*Սովորական տառերով տպագրուած տողերը հասարակաց են գլուխներուն ներքեւ նշանակուած բոլոր ձեռագիրներուն։*

*Երբ բառի մը սկիզբը, մէջտեղը կամ վերջը տառ մը փակագիծի մէջ առնուած է կը նշանակէ թէ տարբերակներէն ոմանք այդ տառով իսկ ուրիշները առանց այդ տառին պէտք է կարդալ, քերականական կանոններուն համաձայն։ Այս կարգի տարբերակները, որոնք ընդ- հանրապէս նշանակութենէ զուրկ են, մեծ մասամբ չեն նշուած։*

*Կարճ օրինակ մը բաւական է աւելի յստակօրէն պարզելու հա- մար որդեգրուած դրութիւնը։ Գ. գլուխին (հասարակաց խմբա- գրութիւն) 39–43 տողերը հետեւեալ պատկերը կը ներկայացնեն.*

Արշարունիք եւ (*ԶԷԸԹԺԻԼԾԿՀՂՃՊՓՍՆ*) *Ջորն Երասխայ կաղ- ցուան է, ուր կան* սուրբ ուխտ(ք)ն վարդիկ Հայրն (*ԱԲԳԴԵԶԹԺԻԾ ՂՃ*) եւ Կարմնջաձորն (*ԹԺԻԾՂՃ՝ եւ սուրբ* ուխտն (*ԶԷԸԼԿՀՊՓՍՆ*) *Թաթլու* անապատն (*ԱԲԳԴԵԶԹԺԻԾՂՃ*) եւ Վարոսի վանքն (*ԶԷԸԼԿ ՀՊՓՍՆ*), *ուր գթումաս առաջնորդ կացոյց*։

Արամեան տառերով տպուած բառերէն կը հետեւի թէ՝

ա) Արշարունիք եւ բառերը չկան ԱԲԳԴԵԶ ձեռագիրներուն մէջ

բ) սուրբ ուխտ(ք)ն Վարդիկ Հայր բառերը չկան ԶԷԸԼԿՀՓ ձեռագիրներուն մէջ, եւ թէ ուխտն փոխանակ ուխտքն պէտք է կարդալ այս ձեռագիրներէն անոնց մէջ ուր միայն այս վանքը յիշուած է։

գ) եւ Կարմնջաձորն եւ բառերը չկան ԱԲԳԴԵԶԶԷԸԼԿՀՓ ձեռագիրներուն մէջ։

դ ուխտն բառը չկայ ԱԳԴԵԶԹԺԻԾՂՃ ձեռագիրներուն մէջ։

ե) անապատն բառը չկայ ԶԷԸԼԿՀՓ ձեռագիրներուն մէջ։

զ) եւ Վարոսի վանքն բառերը չկան ԱԳԴԵԶԹԺԻԾՂՃ ձեռագիրներուն մէջ։

Կը հետեւի ուրեմն թէ կարճ խումբին մէջ այս հատուածն է (ուղղագրական տարբերակներով)․

Զորն Երասխայ Կաղզուան է, ուր կան սուրբ ուխտքն Վարդիկ Հայրն եւ սուրբ Թաթլու անապատն ուր (կամ որ) զԹովմաս առաջնորդ կացոյց։

Մնացեալ բոլոր բառերը զանազան անձերու կողմէ կատարուած յաւելումներ են։ Ցանդուցն եզրակացութիւն մը պիտի ըլլար սակայն ըսել թէ սկզբնագիրը ճիշդ ու ճիշդ այսպէս խմբագրուած էր։ Միայն հաւանական է որ այսպէս էր կամ ասոր շատ մօտ։

Բնագրական, քերականական եւ ուղղագրական տարբերակները, ըստ սովորութեան, նշուած են տողատակ։ Ամէն ուր որ ձեռագիրները բոլորովին աղաւաղուած ըլլալ կը թուէին եւ մենք ուղղեցինք՝ մեր սրբագրութիւնները տպուած են արամեան տառերով, որոնց չեն հետեւիր ձեռագիրներու ցուցանիշներ։

Այսպիսի սրբագրութիւններ շատ հազուադէպ պարագաներու մէջ կատարուած են եւ գուցէ աւելորդ էին, որովհետեւ խնդիրը այն չէ թէ հասարակ կամ յատուկ անունի մը ուղիղ ձեւը ո՞րն է, այլ թէ գործին հեղինակը կամ գրիչները ինչպէս ուղղագրած են զանոնք։

Լաւագոյն նկատուած եւ հետեւաբար հրատարակելի բնագրին մէջ որդեգրուած ընթերցուածներու ընտրութիւնը հիմնուած է միշտ ռեւէ հրատարակիչի դատողութեան եւ հմտութեան վրայ, որոնք ոչ անսխալական են եւ ոչ ալ անթերի։ Հետեւաբար հոն ուր այս ընտրութիւնը կրնար վիճելի համարուիլ, տողատակ նշուած են բոլոր տարբերակները ամբողջական նախադասութիւններով։

Ինչպէս յաճախ, ներկայ քննական հրատարակութեան մէջ ալ ապահովաբար կան բառեր որոնց ուղիղ ձեւը կը գտնուի տողատակ տարբերակներուն եւ ոչ բնագրին մէջ: Անոնք որ պիտի օգտագործեն Աշխարհացոյցին այս նոր հրատարակութիւնը, բնականաբար իրենց դատողութեան եւ հմտութեան համաձայն պիտի ընտրեն այն բառը կամ բառերը զոր աւելի ուղիղ կը համարին քան այն որ ընդունուած է հոս:

Պարզելու համար մեր կատարած ընտրութիւններէն ոմանց պատճառները, այստեղ կը յիշենք երկու օրինակ:

Ի ձեռագրին գրիչը Գէորգ դպիր Տէր Յովհաննէսեան, թէեւ իր յիշատակարանին մէջ յայտարարած է թէ «զիարդն եւ էր գրչագիրն այնպէս գրեցաք», կասկած կը ներշնչէ թէ ուղղած է իր օրինակած նախատիպին անձնանուններու եւ տեղանուններու սխալները: Օրինակի համար, Դբ, տ. 139, բոլոր ձեռագիրները, բաց ի Ի–էն եւ Ղ–էն (վերջինը Վենետիկի հրատարակութիւնն է, որ հաւանականաբար սրբագրուած է) ունին ի յաք գետոյն մինչեւ ի մաւր (տարբերակներ՝ մօր, մօռ, մուր, յեմօտ) լեառն: Այս տեղեկութիւնը քաղուած է Անանիա Շիրակացիի (կեղծ Մովսէս Խորենացի) Աշխարհագրութենէն: Ճիշտ ձեւերն են յԱք(ը)լ փխ. յԱք եւ Եմաւոն փխ. Մօր, եւն: Հաւանական է որ Աշխարհացոյցին սկզբնագրին մէջ Աքլ ձեւը գոյութիւն ունեցած ըլլայ, սակայն կարելի՞ է նոյն ենթադրութիւնը ընել Եմաւոն բառին համար ալ: Յեմօտ (յեմաւտ) ձեւը կրնայ այնքան աղաւաղումը համարուիլ իմաւրին որքան յեմաւոնին, նկատի առնելով գրիչներուն երբեմն անհաւատալի սխալագրութիւնները ոչ միայն օտար այլ եւ հայկական տեղանուններու եւ անձնանուններու մէջ: Կը մնայ Ի–ին Եմաւոնը (յունարէն Իմաուս): Անկարելի չէ որ Գէորգ դպիր, ծանօթ Շիրակացիին Աշխարհագրութեան, Մաւրը ուղղած ըլլայ Եմաւոն: Միւս կողմէ, Մուր կամ Մոր կը համապատասխանէ հին Թրք. Մուզ լերան անունին, եւ Z եւ R հնչիւններուն լծորդութիւնը կը բացատրէ Մուր ձեւը, որ կը գտնուի Գ եւ Դ ձեռագիրներուն մէջ: Հետեւաբար այս ուղղագրութիւնն է որդեգրուած մեր բնագրին մէջ: (Սեն–Մարթեն, եւ անոր հետեւելով Նորայր, ունին Եմաւոն, մինչ Ս–ին նախատիպը՝ Սեն–Մարթենի օգտագործած ձեռագիրը (Փ) ունի ի մոր): Եթէ մեր աւելի հին ձեռագիրները հաստատեն Մուր կամ Մաւր ձեւը, Մուզ բառին մէկ տարբերակը հաստատուած պիտի ըլլայ հայերէն բնագրով մը: Հակառակ պարագա–

*յին, պէտք է ենթադրել թէ Գէորգ դպիր,* Աշխարհացոյց*ին այս հատուածին մէջ, ունէր սկզբնագրին շատ աւելի հաւատարիմ օրինակ մը:*

*Երկրորդ օրինակն է հետեւեալը:*

*Գա, ա* 107 *եւ Գբ, ա.* 53 — Կարս fաղաfն Անի է:

*Կարճ խումբին չորս ձեռագիրները (ԱԲԳԴ) ունին* յանի, *իսկ Զ՝* անի *(Ե–ին մէջ, որուն հետ գրեթէ միշտ համընթաց է Զ, այս տողը կտրուած է): Ընդարձակուած խումբին մէջ եօթը ձեռագիր (ԶէԸԼԿ ՀՓ) ունին* անի, *Թ՝* յանոյ երկիր, *Ծ՝* յանւոյ երկիրն, *Ը՝* անի *ուղղուած* անու, *ԺԾ՝* յանու երկիրն, *Ղ՝* Կարսոյ երկիրն եւ fաղաfն յԱնու երկիրն: *Ի–ին մէջ այս նախադասութիւնը բոլորովին խաթարուած է եւ խառնուած նախորդ եւ յաջորդ նախադասութիւններուն հետ:*

Յանի *գրչութեան մէջ* յ *նախդիր չէ, այլ հագագային հնչումի մը նշանագիրը, որով բառը ուղղական ձեւով* Անի *է, եւ* 12 *ձեռագիր այս ձեւն է որ ունին: Սակայն Կարս քաղաքը Անի քաղաքը չէ, եւ իրաւամբ նախադասութիւնը կրնայ աղաւաղուած նկատուիլ, մանաւանդ որ* 5 *ձեռագիր ալ, առաւել կամ նուազ նմանութեամբ, ունին* յԱնու երկիրն է: *Սեն–Մարթեն, որ յայտարարած է թէ Բարիզի ձեռագիրը (Փ) կը հրատարակէ, սխալաշատ գտնելով Պոլսոյ հրատարակութիւնը (Պ), հետեւելով Փ–ին լուսանցքին մէջ նշանակուած Պ–ին տարբերակին եւ զայն ուղղելով, այս նախադասութիւնը փոխած է հետեւեալ ձեւով.* եւ այլ բազում, Կարս եւ fաղաfս Անի: *Նորայր, որ սակայն տեսած է Հ ձեռագիրը, ուղղած է* «եւ այլ բազում կասր եւ fաղաfանի» *(եւ ուրիշ բազմաթիւ բերդեր* (կասր *արաբերէն* բերդ) *եւ քաղաքներ): Արդ,* Աշխարհացոյց*ին մէջ ոչ իսկ մէկ անգամ* բերդ *բառին փոխարէն գործածուած է* կասր *բառը:* Անի *յոդնակերտ մասնիկով ալ ոչ մէկ բառ կը գտնուի ձեռագիրներուն մէջ: Ժ–ին մէջ միայն մէկ անգամ կը հանդիպինք* fաղաfնին այսոfիկ են *բառերուն, զոր պէտք է կարդալ* fաղաfն են այսոfիկ են, *բային կրկնութեամբ, ինչպէս տասնեակներով՝ մեր ձեռագիրներուն մէջ, եւ հիմնուելով Ժ–ին մէջ բառերու կցումներուն եւ տառերու յաճախադէպ նմանութեանց վրայ: Նորայրին սրբագրութիւնը ընդունելի պիտի ըլլար եթէ գոյութիւն ունեցած ըլլային միայն մէկ*

կամ երկու ձեռագիր. բայց ոչ ներկայ պարագային: Թերեւս յԱնու երկիրն է ընթերցուածը, որ կը գտնուի միայն ընդարձակուած խումբին մէջ, սկզբնական ձեւը ըլլայ, Կարս քաղաքը Անիի երկրին կամ գաւառին մէջ է իմաստով: Անկարելի չէ նաեւ որ Կարս քաղաքն եւ Անի է բառերը կը պատկանին երկու տարբեր նախադասութիւններու, որոնց միջեւ տող մը անուշադրութեամբ չէ ընդօրինակուած մեր բոլոր ձեռագիրներուն նախատիպին մէջ: Յաջորդ նախադասութեան «Վանանդայ Կարուց էր» բառերը կը թուին ոյժ տալ այս ենթադրութեան: Այս անստուգութեան մէջ, նախընտրութիւն տըւինք կարճ խումբին բոլոր եւ ընդարձակուած խումբին մեծամասնութեան ընթերցուածին եւ պահեցինք Կարս քաղաքն Անի է ընթերցուածը, ինչպէս ուրիշ տեղեր ալ նախընտրեցինք ձեռագիրներուն մեծամասնութեան ընթերցուածները, բաց ի այն պարագայէն ուր մեր կարծիքով հնագոյն ուղղագրութիւն մը կը գտնուէր ձեռագրի մը մէջ (ինչպէս Ըստըմպօլ փխ. Ըստամպօլ):

Քերականական եւ ուղղագրական տարբերակները այնքան ստուարաթիւ են մեր ձեռագիրներուն մէջ որ զանոնք ամբողջովին նշեցինք միայն առաջին գլուխին մէջ, զեղչելով սակայն բառավերջի յապաւուած կամ աւելցուած յ-երը, (ինչպէս կա փխ. կայ, սայ փխ. սա): Քերականական տարբերակները կը կայանան աւելորդ կամ պակաս բայերու եւ յօդերու, ինչպէս նաեւ հոլովներու տարբերութեան մէջ: Աշխարհացոյցին նպատակը աշխարհագրական է եւ ոչ՝ լեզուաբանական, եւ ձեռագիրներուն մէջ տեսնուած լեզուական տարբերութիւններն ալ լեզուաբանական տեսակէտով կարեւորութենէ զուրկ են, ծանօթ ըլլալով ուրիշ հարիւրաւոր ձեռագիրներէ: Միշտ չենք նշած նաեւ բառերու տեղափոխութիւնները, ինչպէս առաքելոյն Յակոբայ կամ Յակոբայ առաքելոյն, ինչպէս նաեւ գրիչներէն ոմանց կողմէ երկիւղածօրէն աւելցուած սուրբ կամ ուխտ բառերը: Դիտելի է որ հնագոյն ձեռագիրներուն մէջ սուրբ բառը շատ աւելի քիչ գործածուած է քան ընդարձակուած խումբին մէջ: Յաճախ, գոհացած ենք միայն մէկ անգամ նշելով օտար յատուկ անուններու սխալ գրչութիւնները:

Այս կարգի տարբերակները նոյն իսկ չէին կրնար ծառայել ցոյց տալու ձեռագիրներուն սերումը, որ մեծ մասամբ երեւան կ՚ելլէ բնագրին մէջ նշանակուած տառանիշներով:

# ԱՇԽԱՐՀԱՑՈՅՑԻՆ ՀԵՂԻՆԱԿԸ

*7 · — Սեն–Մարթէն իր թարգմանութեան կցած առաջին ծանօթագրութեան մէջ կը յայտարարէր թէ «հրատարակիչները եւ գրիչները այս գործը վերագրած են Վարդան վարդապետ Բարձրաբերդցիին, որ ԺԳ դարուն շատ մեծ համբաւ կը վայելէր Հայաստանի մէջ եւ մեռած է 1271ին (*) : Այս գիրքը չի կրնար անոր վերագըրուիլ, որովհետեւ հեղինակը Երեւանի մօտ Խորվիրապի եկեղեցիին նկարագրութեան մէջ կ'ըսէ թէ համբաւաւոր Վարդանին գերեզմանը հոն էր : Կը խորհինք թէ այս հեղինակը Վարդանի աշակերտներէն մէկն էր եւ ատոր համար է որ գիրքը անոր վերագրուած է : Այսպէս կը խորհինք, որովհետեւ երբ կը խօսի Գալուձորի վանքին մասին, ուր Վարդան Բարձրաբերդցի բնակած է իր կեանքին վերջին տարիներուն, այդ վայրը կը կոչէ «վարժարան եւ աթոռ մեր սուրբ վարդապետին», ինչ որ անտարակոյս չի կրնար պատշաճիլ այն նշանաւոր անձին որուն մասին կը խօսինք» (**) :*

*Զարմանալի է որ Սեն–Մարթէն չէ հետաքրքրուած թէ արդեօք* Աշխարհացոյցը *ուրիշ ձեռագիրներով ալ պահուա՞ծ է, եւ չէ խորհեր թէ այդ երկու նախադասութիւնները, որոնք գործին հեղինակին ինքնութիւնը կասկածելի կ'ընծայէին, կրնային ընդմիջարկութիւններ ըլլալ :*

*Գալուձորի կամ Գայլուձորի կամ Գլաձորի վերաբերեալ յիշատակութեան մէջ բոլոր ձեռագիրները (Գա, տ. 68–69 եւ Գբ, տ. 94–95) ունին «Եւ Գալուձոր, ուր աթոռն է եւ վարժարան սուրբ վարդապետացն մերոց», եւ Բարիզի ձեռագիրն ալ (Փ), որուն վրայ հիմնուած է Սեն–Մարթէնի հրատարակութիւնը ; նոյնպէս ունի «վարդապետացն մերոց» եւ ոչ «վարդապետին մերոյ» : Այս վերջին ձեւը ունի միայն Կ. Պոլսոյ տպագրութիւնը, որուն, հոս ինչպէս քանի մը ուրիշ տեղեր, հետեւած է Սեն–Մարթէն, հեռանալով Փ–էն, Պոլսոյ հրատարակութիւնը իրաւամբ «բազմավրէպ» յայտարարելէ ետք :*

---

(*) Saint-Martin, ibid, II, page 45, n. 1.

(**) Վարդան Արեւելցի վախճանած է 1269ին,

Վարդանի գերեզմանին յիշատակութիւնը չի գտնուիր կարճ խմբագրութեան ձեռագիրներուն մէջ, իսկ ընդարձակուած խումբին ձեռագիրներէն միայն ՁԷԽԿՀՂՄՓ եւ Պ ունին (Գբ, տ. 61–65, մինչ ԸԹԺԻԼԾՃ չունին: Նոյն իսկ Փ–ի մէջ այս յիշատակութիւնը աւելցուած է լուսանցքին մէջ, ուրիշ գրչութեամբ (նոտրագիր, մինչ ձեռագիրը բոլորգիր է), յայտնօրէն ձեռագիրը բաղդատուած ըլլալով ուրիշի մը հետ: Այս պարագան բաւական էր ընդմիջարկութեան կասկածը արթնցնելու համար Սեն–Մարթենի միտքին մէջ: Ակներեւ է որ Փ ընդօրինակուած է ձեռագիրէ մը, որուն մէջ Վարդանի եւ Ներսէս Շինողի գերեզմաններուն յիշատակութիւնը գոյութիւն չունէր:

Աշխարհացոյցին հեղինակութիւնը պատմագիր Վարդանին վերագրելու դէմ հիմնաւոր առարկութիւն մը ունի Հ. Մ. Չամչեան (Պատմութիւն Հայոց, 1784, Գ, էջ 242): Խօսելով Մեծն Վարդանի մասին, Չամչեան կը գրէ. «Են եւ որք սմա ընծայեն զհամառօտ աշխարհագրութիւն ինչ՝ արարեալ ի Վարդանայ ումեմնէ. բայց հեղինակ նորին յետոյ է քան զսա եւ քան զաշակերտ սորա զյովհան եզնկացին. զի ի ձեռագիր օրինակս բանք լինին անդ եւ զեզնկացւոյն. մանաւանդ զի որովհետեւ յայսպիսի գիրս հետզհետէ յաւելեալ են օտարոտի բանք յանզգոյշ անձանց, դժուարին լինի որոշել զհարազատ հեղինակ նոցին»:

Հաւանականաբար Չամչեանին հետեւելով է որ Հ. Մկրտիչ Աւգերեան Աշխարհացոյցը վերագրած է «Վարդանայ ուրումն անծանօթի» Վենետիկի Մխիթարեանց ձեռագիրներուն իր ցուցակին մէջ, նկատելով որ այդ գործին մէջ յիշուած է Յովհաննէս Երզնկացին ալ (Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ Վենետիկի, Բ, էջ 809–810):

Աւգերեանին առարկութիւնը կրկնած է Հ. Համազասպ Ոսկեան (Յովհաննէս Վանական եւ իւր դպրոցը (1922), էջ 82)(***)որ, Վարդան Արեւելցիին հեղինակութիւնը մերժելու «մէկ ուժեղ ապացոյցը այն կը նկատէ որ Աշխարհացոյցին մէջ յիշատակուած է Վարդանին մահը:

Յովհաննէս Երզնկացին յիշուած է Անձին եւ Վերին չարականներուն յօրինման առթիւ (Գա, տ. 199–201 եւ Գբ, տ. 267–273), որ

(***) Վարդանի Աշխարհացոյցը առաջին անգամ տպագրուած չէ 1698ին, ինչպէս կը գրէ Հ. Հ. Ոսկեան (անդ, էջ 82, ծան. 1): Նոյնպէս ճիշտ չէ թէ «Բազմավէպ»ի մէջ հրատարակուածը «հատուած» մըն է: (Տես վերը՝ 1):

1272–1275 *տարիներէն առաջ չի կրնար գրուիլ* (*տես Արմենուհի Սրապյան*, Հովհաննես Երզնկացի, *Երեւան*, 1958, *էջ* 27–28)։ *Վարդան Արեւելցի մեռած ըլլալով* 1269*ին*, *կը հետեւի թէ Երզնկացիին յիշատակութիւնը ընդմիջարկութիւն մըն է*։

*Ճշմարտութիւնը ընդնշմարած է Հ. Բ. Սարգիսեան* (Ցուցակ... Վենետիկի, *էջ* 810), *երբ Վարդան Արեւելցիին հեղինակութիւնը աւելի տարակուսելի գտնելէ ետք ո՛չ միայն անոր գերեզմանին յիշատակութեան պատճառաւ եւ «մանաւանդ այսպիսի անձնադրութեամբ» — իբրեւ թէ մէկը կարենար իր «չիրիմը յիշել» առանց անձնադրութեան իսկ — կարծիք կը յայտնէր թէ «կա՛մ տեղին եկամուտ յաւելուած է եւ կա՛մ Մեծն Վարդանի աշխարհագրութիւնն ես, — ինչպէս Խորենացւոյն, — ետքէն փոփոխութիւններ կրած է»*։ *Բայց զարմանալի է որ այս կասկածը ունենալէ ետք — ինչ որ արժանիք մըն է — նոյն իսկ Վենետիկի ձեռագիրներուն չէ դիմած զայն ստուգելու համար, եթէ չէր յիշեր ինքինեանի* Ստորագրութիւնը *եւ* Հնախօսութիւնը։

*Այս բոլոր հեղինակներուն ուշադրութենէն վրիպած է* Աշխարհացոյցին *մէջ ուրիշ յիշատակութիւն մըն ալ, որ գործին խմբագրութիւնը կրնայ վերագրել տալ ԺԴ դարուն առաջին երեսնամեակէն ետք ապրած հեղինակի մը*։ *Արդարեւ, ձեռագիրներէն ոմանց մէջ յիշուած է թէ ո՛ւր թաղուած է Խաչատուր Կեչառեցի, որ մեռած է շուրջ* 1330–1331*ին* (*տես Մ. Թ. Ավդալբեգեան*, Խաչատուր Կեչառեցի, *Երեւան*, 1958, *էջ* 20)։ *Իրականութիւնը այն է որ այս յիշատակութիւնը կը գտնուի ընդարձակուած խմբագրութիւններուն մէջ*։

*Վարդանի հեղինակութեան դէմ նոր փաստեր դատած ըլլալ կարծած է Աշոտ Յովհաննիսեան, որ* Աշխարհացոյցին *խմբագրութեան ժամանակը կը տանի ԺԴ դարուն վերջերը կամ ԺԵ դարուն սկիզբները*։ *Վարդանը, կը գրէ պատմաբանը, Սամարղանդը «նստողաց ազգին աթոռ» կը համարի, բան մը որ Լանկ Թամուրի ժամանակ*, 1370*էն ետք տեղի ունեցած է*։ *Նոյնպէս, Վարդան Մոսկուան «աթոռ ազգին ռուսաց» դիտէ, ինչ որ ճիշտ է միայն* 1389*էն ետք*։ *Այսուհանդերձ*, Աշխարհացոյցին *խմբագրութիւնը* 1453*էն առաջ կատարուած է, որովհետեւ Կ. Պոլիս յունական քաղաք նշուած է* (Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, *Երեւան*, 1957, *էջ* 462 *եւ ծան.* 4)։

*Առաջին երկու յիշատակութիւնները կը գտնուին միայն ընդարձակուած խմբագրութիւններուն մէջ, եւ, հետեւաբար, Վարդանի*

*հեղինակութեան դէմ փաստեր չեն կազմեր։ Պարագան չէր փոխուեր եթէ նոյն իսկ կարճ խմբագրութեան մէջ գտնուէին։*

*Վարդան Արեւելցիի վերագրուած «անձնագովութիւն»ը (Հ. Բ. Սարգիսեան,* անդ) Աշխարհացոյցի *հեղինակին տրուած «նորոգ թարգմանիչ, երկրորդ Լուսաւորիչ» գովասանական որակումներն են։ Բնականաբար, Վարդան Արեւելցիէն տարբեր Վարդան մը կըրնար այս ածականները գործածել անոր համար։*

*Նոյն գովասանական ածականները կը գտնուին գործին խորագիրներէն ոմանց մէջ։ Կը բաւէ սակայն ակնարկ մը նետել ԽՈՐԱԳԻՐ տողատակ ծանօթագրութեանց վրայ, համոզուելու համար թէ գործը սկզբնաբար այդ խորագիրը չէր կրեր։*

*Այս բացատրութիւններէն ետք, կը մնայ աւելցնել թէ, ինչպէս Նորայր Բիւզանդացի դիտել տուած է (տես էջ 1, Ծան. Ն–ի), Վարդանի* Պատմութիւնը *եւ* Աշխարհացոյցը *կրսկսին գրեթէ բոլորովին համանման նախադասութեամբ մը, եւ ուրիշ տեղեր ալ կը գտնուին այս երկու գործերուն միջեւ ինչ ինչ տեղեկութեանց նմանութիւններ։ Անշուշտ, այս պարագաները վճռական փաստեր չեն կրնար կազմել, որովհետեւ ուրիշ Վարդան մը կրնայ օգտուած ըլլալ Վարդան Արեւելցիին Պատմութենէն։ Սակայն պէտք է փաստել այդ միւս Վարդանին գոյութիւնը այս առարկութիւնը հիմնաւորելու համար։ Ամէն պարագայի մէջ,* Աշխարհացոյցին *հեղինակութիւնը Վարդան Արեւելցիին վերագրելու գլխաւոր փաստը այն է որ, բաց ի Պլուզ վարդապետին յիշատակութենէն, որ յայտնապէս ընդմիջարկութիւն մըն է ուրիշ հարիւրաւոր ընդմիջարկութիւններու նման, ներկայ աշխատութեան մէջ օգտագործուած հնագոյն երկու ձեռագիրները (Ե եւ Զ) չունին տեղեկութիւն մը որ Վարդան Արեւելցիին մահէն յետնագոյն ժամանակի մը վերաբերի։*

*Եւ քանի որ ձեռագրական աւանդութիւնը* Աշխարհացոյցին *հեղինակ կը ճանչնայ «նորոգ թարգմանիչ եւ երկրորդ լուսաւորիչ» Վարդան վարդապետ մը, որ միայն Վարդան Արեւելցին կրնայ ըլլալ եւ ոչ ուրիշ Վարդան մը, պատճառ չկայ* Աշխարհացոյցը *չվերագրելու պատմագիր, աստուածաբան եւ ուսուցիչ նոյն Վարդանին, մինչեւ որ հակառակը փաստել կարելի ըլլայ անառարկելի ապացոյցներով։*

## ԱՇԽԱՀԱՑՈՅՑԻՆ ԱՐԺԷՔԸ

8·— Հ· Ղուկաս Ինճիճեան (Հնախօսութիւն, Գ, էջ 314–315), որ իր Ստորագրութեան մէջ զանազան տեղեր յիշած է Աշխարհացոյցին հաղորդած տեղեկութիւնները, կը գրէ· «Ցայժմ աշխարհագրութեան բատ մեծի մասին է ստորագրութիւն, մանաւանդ թէ անուանակոչութիւն տեղեաց՝ նշանագրէ նաեւ զնոր անուանս, ոչ սակաւ լոյս տայ մեզ յայժմ մասին· որպէս կարես տեսանել ի մերում ստորագրութեան մեծին Հայոց, զոր բազում ուրեք յիշատակեմք, առեալ բաղդատութեամբ զանազան ձեռագրաց»:

Սեն–Մարթեն (անդ, Բ, էջ 454) կը գրէ· «Թէեւ այս գործը անկարգ է եւ այն ձեւով որով խմբագրուած է, դժուար ըլլայ հետեւիլ հեղինակին նկարագրութիւններուն, ընդհանրապէս շատ շահեկան է եւ շատ օգտակար Հայաստանի մասնաւոր աշխարհագրութեան համար: Կը պարունակէ բազմաթիւ մանր տեղեկութիւններ այն փոփոխութիւններուն մասին, որոնք ժամանակի ընթացքին տեղի ունեցած են այս երկրին աշխարհագրական բաժանումներուն եւ անուանակոչումներուն մէջ, զոր ուրիշ տեղ բացարձակապէս անկարելի պիտի ըլլար գտնել»:

Վերջապէս, Հ· Հիւպշման Վարդանի Աշխարհացոյցէն օգտուած է ամէն անգամ որ նոր տեղեկութիւն մը գտած է անոր մէջ (տես Հին Հայոց Տեղւոյ Անունները, 1907):

Աշխարհացոյցին գլխաւոր արժանիքը այն է որ «այս գործը տեսակ մը հնախօսութիւն կը ներկայացնէ՝ ջանալով շատոնց աւերակ Հայաստանի հին գաւառներու եւ քաղաքաց տեղերը նշանակել նորերով: Եթէ շատ տեղ արդէն չի կրնար ուղիղը գտնել», կը նշանակէ թէ հեղինակին օրով այլ եւս հին Հայաստանի աշխարհագրական անուններուն համապատասխան նոր անուններ «շատ տեղ» անծանօթ էին եւ կամ կը շփոթուէին սխալ անուններու հետ: (Հ· Յ· Տաշեան, Հին Հայաստանի Արեւմտեան Սահմանը, 1948, էջ 108): (1)

---

(1) Այս էջերը տպագրութեան յանձնուած էին երբ ստացանք Ա·

*Աշխարհագրական, պատմական եւ համեմատաբար նուազ տնտեսական տեղեկութիւններէն զատ* Աշխարհացոյցը *շահեկան է նաեւ իբրեւ պատկերը ԺԳ դարուն եւ աւելի ետք տիեզերքին, մեր երկրագունտին եւ օտար երկիրներու մասին Հայոց ունեցած ծանօթութեանց տեսակէտով:*

## ՆԵՐԿԱՅ ԱՇԽԱՏՈՒԹԵԱՆ ԱՐԺԷՔԸ

9·— 24 *ձեռագրի եւ տպագրի համեմատութեամբ կատարուած այս հրատարակութեան գլխաւոր արժէքը կը կայանայ կարճ եւ ընդարձակուած խմբագրութեանց անջատումին մէջ, որով մօտաւորապէս կը ճշտուի նաեւ սկզբնագրին բովանդակութիւնը, իսկ ընդմիջարկութիւնները եւ թերիները բացայայտօրէն կը տեսնուին:*

*Ձեռագիրներուն համեմատութիւնը երեւան կը հանէ քանի մը նոր տեղանուններ եւ ուրիշ տեղեկութիւններ, որոնք չեն գտնուիր նախապէս տպագրուած օրինակներուն մէջ:*

*Աշխարհացոյցին սկզբնագիրը մօտաւորապէս ճիշտ կերպով վերակազմելու համար, անհրաժեշտ է համեմատել ուրիշ հնագոյն ձեռագիրներ, որոնք թերեւս գոյութիւն ունին այս կամ այն ձեռագրատան մէջ եւ մեզի անմատչելի մնացին: Ընդարձակուած խումբերուն համեմատութիւնն ալ հաւանական է որ երեւան հանէ տեղանուններ, վանքերու անուններ, եւն. որոնք կրնան զուրկ չըլլալ աշխարհագրական եւ պատմական արժէքէ մը:*

---

Գ. Աբրահամյանի *Մատենադարանի Ձեռագիր Գանձերը* անուն փոքր աշխատութիւնը (Երեւան, 1959), ուր կան հետեւեալ տողերը. «Աշխարհագրական համեմատաբար ընդարձակ եւ ուշագրաւ աշխատութիւն ունի ԺԳ դարի պատմիչ Վարդան Արեւելցին, որը շատ ման եկած, աշխարհի տեսած անձնաւորութիւն է: ... Վարդանի «Աշխարհացոյց»ն ընդգրկում է Հայաստանի եւ նրա հարեւան երկրների ԺԳ դարի պատմական աշխարհագրութիւնը: Աշխարհագրութեան մէջ արծարծուած են ինչպէս ֆիզիքական, այնպէս եւ տնտեսական բնոյթի հարցեր: Արժէքաւոր է այն յատկապէս Փոքր Ասիայի պատմական աշխարհագրութեան համար: Վարդանի «Աշխարհացոյց»ի բազմաթիւ ձեռագրեր կան Մատենադարանում, որոնցից լաւագոյնը ԺԶ դարից է (ձեռ. Նօ. 1724, թ. 1բ–22ա):

Քերականական եւ ուղղագրական տարբերակներէն ինչ որ պահուած է — մաս մը ստիպուեցանք ջնջել տպագրութիւնը դիւրացնելու համար — բաւական է գաղափար մը տալու համար ձեռագիրներուն գրչութեան մասին։ Ամէն պարագայի մէջ, ուշադրութեան արժանի ոեւէ տարբերակ յապաւուած չէ։ Գուցէ ոմանք նոյն իսկ աւելորդ համարին ցոյց տրուած տարբերակներուն մէկ մասը։

Ձեռագիրներէն ոմանց մէջ կան հատուածներու տեղափոխութիւններ, որոնք յիշուած են տողատակ։ Չեն յիշուած սակայն եկեղեցական ժողովներուն եւ աւետարանիչներուն վերաբերեալ տեղեկութեանց տեղափոխութիւնները, որովհետեւ ասոնք յայտնապէս ընդմիջարկութիւններ են եւ մաս չէին կազմեր սկզբնագրին։ Մ-ի մէջ այս տեղեկութիւնները Աշխարհացոյցէն անջատաբար կը գըտնուին վերջը։ Աշխարհագրական եւ պատմական տեսակէտով կարեւորութենէ բոլորովին զուրկ են։

Ձեռագիրները բաժնուած չեն գլուխներու, հատուածներու եւ տողերու։ Այս բոլոր բաժանումները, ինչպէս նաեւ վերնագիրները, մեր կողմէ կատարուած եւ աւելցուած են։

## ԱՄՓՈՓՈՒՄ

1. Վարդանի անունով ծանօթ Աշխարհացոյցին հեղինակն է Վարդան Արեւելցի (+ 1269)՝ պատմագիր, մեկնիչ եւ հեղինակ կրօնական գործերու, մինչ շատերը, հիմնուելով Սէն-Մարթէնի հրատարակութեան վրայ, զայն համարած են ուրիշ Վարդանի մը աշխատութիւնը։

2. Աշխարհացոյցը մեզի հասած է կարճ եւ ընդարձակուած խմբագրութիւններով։

3. Կարճ խմբագրութեան ներկայացուցիչներն են ներկայ հրատարակութեան Ա, Գ, Դ, Ե, Զ ձեռագիրները եւ Բ ձեռագիրը մինչեւ Հայաստանի աշխարհագրութեան վերջը։

4. Կարճ խումբին Ե եւ Զ ձեռագիրները մերձաւորագոյն ներկայացուցիչներն են սկզբնագրին։

5. Բոլոր ձեռագիրներն ալ ունին թերիներ եւ ընդմիջարկութիւններ։

6. Ձեռագիրներուն մեծագոյն մասը ընդօրինակուած է աշխար-

